# ՀՆՉՈՒՄ Է ՆՈՐԻՑ ԶԱՆԳԸ ԴՊՐՈՑԻ



## ՍԵՊՏԵՄԲԵՐ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Ամառն անցավ երազանքով,
Խարույկների բոցով թռվիչ,
Սեպտեմբերը զվարթ զանգով
Մեզ դպրոց է կանչում նորից:
Դո՛ւ, սեպտեմբե՛ր, որ դաշտերին
Հրաժեշտ ես երգում բարի,
Մեր սրտերում երգ ես դառնում
Սկիզբ առնող ճանապարհի:
Դու հավքերի կապույտ շղթան
Ուղարկում ես անհայտ հեռուն,
Իսկ մեզ գրկից մայր բնության
Մայր դպրոցի գիրկն ես բերում:
Դասագրքեր բերում մեզ նոր,
Դասն ես դառնում մեր առաջին,
Մեր հուշերն ես հավետ կապում
Քո զանգերի անուշ կանչին:

## ՍՊԱՍՈՒՄ ԷԻ...

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Սպասում էի առաջին զանգին,
Երբ գերանդիով խոտ էի հնձում,
Դպրոցում էր միշտ լինում իմ հոգին,
Խնդիրներ էի մտքիս մեջ լուծում:

Սպասում էի առաջին զանգին,
Երբ կալսում էինք հաշանը դիզված,
Նույնիսկ հազար տող կանեի անգիր,
Եթե ինձ դպրոց կանչեին հանկարծ:

Իսկ երբ հնչում էր զանգը առաջին,
Արտին ու կալին հրաժեշտ տալով,
Կարոտած նրա անուշ ղողանջին,
Ես դպրոց էի վազում խայտալով:

Առաջին զանգի ղողանջը կարծես
Մի նոր աշխարհ էր իմ առջև բացում,
Ես ձգտում էի սովորել այնպե՛ս,
Որ իմ անունն էլ հիշվեր դպրոցում:

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ 50 ՏԱՐԵԿԱՆ Է

## ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ ԽԻԶԱԽՈՒԹՅՈՒՆ Է, ԿԱՄՔ, ՀԱՄԱՌՈՒԹՅՈՒՆ



Մեր երկրի բնակչության մոտ կեսը երեսուն տարեկան էլ չկա: Գլխավորապես այս կեսի ջանքերով անցյալ տարի շարք մտան հազար ինը հարյուր արդյունաբերական ձեռնարկություն, հանրային դաշտերից հավաքվեցին հարյուր ութսունհինգ միլիոն տոննա հացահատիկ ու տիեզերք ուղարկվեցին մեկ տասնյակից ավելի արբանյակներ: Սովետական երիտասարդության այս անձնազոհ աշխատանքը ղեկավարում և ուղղություն էր տալիս լենինյան կոմերիտմիությունը՝ սովետական երիտասարդության միակ քաղաքական կազմակերպությունը, որն այսօր իր շարքերում համախմբում է քսանութ միլիոն պատանի ու աղջիկ:

Հայ երիտասարդությունը սովետական երիտասարդության փոքր, բայց փառապանծ ջոկատներից է: Նրա անցած հիսնամյա ուղին մաքառումների, հաղթանակների ու պայքարի բովով ձգվող մի ճանապարհ է, որն սկսվում է Ղուկաս Ղուկասյանով ու ավարտվում մեր օրերի օդային հերոս Կարապետ Կոշտոյանով: Այսօր երեք հայ երիտասարդից երկուսը սովորում են, մոտ քառասուն հազար հոգի ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն: Յուրաքանչյուր երկրորդ հայ գիտնականի տարիքը չի անցնում երեսունից: Նշանակում է մեր երիտասարդները Բյուրականից խոսում են աստղերի հետ, իրենց ձեռքերով են ստեղծում «Նաիրի» հրաշք մեքենան և Եվրոպայի ամենամեծ արագացուցիչը: Հայաստանի արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառի յուրաքանչյուր երկրորդ աշխատողը երիտասարդ է ու կոմերիտական: Միայն անցյալ տարի հինգ հազար ուսանող մեկնեց Արփա-Սևան, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը, հանրապետական և միութենական մյուս կառույցները: Նրանք կատարեցին ավելի քան հինգ միլիոն ռուբլու շինարարական աշխատանք և մեծապես նպաստեցին այդ կառույցների արագ շահագործմանը: Դեռ նոր է սկսվել ընթացիկ հնգամյակը, բայց հայ երիտասարդներն արդեն որոշել են վերցնել հանրապետության ամենաբարդ կառույցների՝ Զոդի ոսկու հանքի և ատոմային կայանի շեֆությունը, այնպես ինչպես անցյալ հնգամյակում վերցրել էին Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շեֆությունը:

Լրանում է Հայաստանի կոմերիտմիության 50-ամյակը: Իր ստեղծման շրջանում նա ութ հազար անդամ ուներ, այժմ նա իրենից ներկայացնում է երկու հարյուր ութսուն հազարանոց մի հզոր բանակ: «Իր բազմադարյան վայրիվերումներով լի ողջ պատմության ընթացքում,— իրավացիորեն նշում է ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Գ. Սահակյանը,— հայ ժողովուրդը չէր կարող երազել այնպիսի բազմամարդ և գիտելիքներով հարուստ երիտասարդական կազմակերպության մասին, ինչպիսին Հայաստանի լենինյան կոմերիտմիությունն է»:

Պատանի՛ պիոներ, վաղը քեզ բախտ է վիճակվելու գտնվել լենինյան կոմերիտմիության շարքերում:

Ամբարի՛ր քո մեջ գիտելիքների մեծ պաշար, մտքի և հոգու անսպառ ուժ, որպեսզի արժանի լինես կրելու կոմերիտականի բարձր կոչումը:

# ԱՆՄԱՀՈՒԹՅԱՆ ՀԵՏՔԵՐՈՎ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նվիրում եմ կոմերիտական Կառլեն Մելիքսեթյանին, որը 1944 թվականին ֆաշիստների դեմ մղվող մարտերում ընկավ քաջի մահով:



1.

Վալյավա փոքրիկ գյուղակում կա մի հուշարձան
և հուշարձանին կա քո նկարը:
Հետո երկու տող.

«Ասա՛, հայրենի՛ք, սրանից ավել
Էլ ի՞նչ ես ուզում, որ տամ քեզ նվեր»:

Երգեր էիր գրում և քո երգերի տողերն են սրանք,
որոնց միջով քո արյունն է հոսում
ազնիվ ու կարմիր:
Դրանց ճշմարիտ անկեղծությունը
ապացուցեցիր դու կյանքի գնով:
Ուրեմն ահա խոնարհում ենք մենք
մեր գլուխները
քո փոքրիկ կյանքի մեծության առաջ,
Կյանք, որ կիսատ ես թեև դու թողել,
Շարունակելու երդում ենք տալիս:

2.

Ինչո՞ւ միայն դու,
այլ բոլոր նրանք,
ում ջահել կրծքին կոմերիտական տոմսակն էր
սեղմած,
վստահ էին իրենց արդար պայքարի
վերջով հաղթական:
Պայքար, որ կոչվեց՝ Մեծ Հայրենական:
Դուք ետ չդարձաք:
Մայրեր ծերացան ձեզ սպասելով:
Նրանք կանգնում էին ճանապարհների եզրին ամեն օր
աչքերի մեջ հույս,
իսկ դուք պառկած էիք սառը հողի տակ,
հող, որը մայր էր դարձել ձեզ համար,
որովհետև այն հողն էր հայրենի,
և նրա սիրուն, նրա քնքշանքին
բոլորից առաջ դո՛ւք եք արժանի:

3.

Եվ բարձրանում են ձեր շարքերն ահա:
Բոլորդ այնտեղ եք,
ու առնական է ձեր քայլքը, խրոխտ:
— Եվ մահը անգամ արգելք չդարձավ
ձեր ճանապարհին:

Ու գնում եք դուք,
ոտնահետքերից շենքեր են ելնում,
կայաններ հզոր, այգիներ ծաղկուն:
— Եվ ձեր հետքերով քայլում ենք մենք էլ
ու մեր շարքերում չկա տատանում:
Դուք դրոշ ունեք, և այն կարմիր է,
և երբեք կարմիր, անվերջ, հաղթական,
որովհետև դուք մեկ եք, միակ եք,
և կոչվում եք դուք
կոմերիտական:

— Փառաբանության խոսքերի համար
դուք շատ եք բարձր,
և շատ եք ազնիվ





փառքի հետևից գնալու համար,
ուրեմն դուք հենց այդպես եք ծնվել,
այդպես ապրելու, այդպես մեռնելու՝
դուք ճիշտ եք ընտրել
շիտակ ճանապարհն հարատևելու…

4.

Այսպես էր ծնվել կյանքում նաև նա.
բայց կառուցելո՛ւ, ստեղծելո՛ւ ոգով —
ո՛չ սպանության:

Զոկատավար էր, հետո ուսանող:
Դպրոցում հաճախ հանդես էր գալիս երեկույթներին,
աշակերտներին պատմում էր Կարմիր բանակի մասին,
քաղաքացիական կռիվների մեր հերոսների,
աշխարհում տիրող դրության մասին:

Ցիցերոն էին նրան անվանում՝
հմուտ խոսելու և լեզվի համար:

Բայց հետո նրան զենքը պետք եկավ:
1944 թիվ:
Թշնամու տանկին ելավ դեմ դիմաց:
Նետեց նռնակը: Տանկը բոցկլտաց:
Եվ ինքն էլ ընկավ խոցված գնդակից…
… և անմահացավ:

5.

Դե, էլ ի՞նչ,
հիշե՞նք, խոնարհվե՞նք, և վե՞րջ:
Ո՛չ,
սա դեռ սկիզբն է,
մեծատառն է դեռ:
Նրանց կռիվը գնդացրով էր, սրով էր, հրով,
մերը՝ դազգահով,
նվաճումներով տիեզերական,
թղթով, գրիչով:
Իսկ հերոսները նույնն են երկուստեք:
Նրանք հերոս էին լինելու հարցում
և չլինելու՝ կյանքի և մահվան,
մենք հերոսներ ենք աշխատանքային,
դարձյալ մարտական:
Եվ նրանց արյան գնով փրկվածը,
հիմնադրվածը պիտի հաստատենք
ուղեղի, ձեռքի և հոգու ճիգով:
Եվ երթը պիտի մշտական լինի,
չընդհատվի երբեք, լինի հաղթական,
որովհետև մենք բոլորս էլ նույնն ենք,
նույն պողպատից ենք՝
կոմերիտական:




ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

1932 թվականի սեպտեմբերին Երևանում կազմակերպվեց հուշերի երեկո, նվիրված Հայաստանի առաջին կոմերիտական կազմակերպությանը՝ «Սպարտակին»: Չկարողանալով անձամբ ներկա լինել երեկոյին, Հայաստանի կոմկուսի առաջին քարտուղար, նախկին սպարտակյան Աղասի Խանջյանը նամակով ողջույնի խոսք էր ուղարկել երեկոյի մասնակիցներին, միաժամանակ առաջարկելով հուշարձան կանգնեցնել Ղուկաս Ղուկասյանի հիշատակին:

Թե ինչպես ընդունվեց այդ առաջարկը և ինչ եղավ հետո, այդ մասին թերևս, կարելի է և չպատմել: Ձեզանից ո՞վ չի եղել այն կանաչ պուրակում, որը կրում է Ղուկաս Ղուկասյանի անունը և որտեղ կանգնած է նրա՝ Հայաստանի առաջին կոմերիտական կազմակերպության հիմնադրի ու Մայիսյան ապստամբության հերոսի հուշարձանը:

1917 թվականին տասնութամյա Ղուկասը Երևանում կազմակերպում է առաջին երիտասարդական մարքսիստական խմբակը, որտեղ ընդգրկվում են 10—12 պատանիներ ու աղջիկներ: Առաջին երկու տարին խմբակի գործունեությունը սահմանափակվում է պարբերական հավաքույթներով, որտեղ կարդացվում են զեկուցումներ մարքսիզմի և ինտերնացիոնալ բարեկամության հարցերի շուրջը: Խմբակը ուներ նաև իր փոքրիկ գրադարանը:

ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ

# ԲԱՐԵՎ



— Բարև,—

Մեկ հատիկ այս բառն եմ ասում
կնքված անձնագիր ցույց տալու նման,
կենսագրություն պատմելու նման,
կամ հարցաթերթիկ լրացնելու պես։

Եվ կուզենայի,
շա՛տ կուզենայի,
որ այս բառն իրոք դառնար անձնագիր
աշխարհում համայն,
ամենքի համար։

— Բարև՛,—

Ասեիր գնացքին,

Նավին
կամ օդանավին,
ու ներս մտնեիր,
«Բարևդ» իբրև տոմսակ ընդունվեր...

Կամաց-կամաց խմբակը ընդլայնվում է, նրա մեջ մտնում են նոր անդամներ, և 1919 թվականի ապրիլի վերջերին ստեղծվում է Երևանի «Սպարտակ» միությունը։ Շատ շուտով միությունը իրեն վերակոչում է «Երիտասարդ կոմունիստների Սպարտակ միություն»։ Դա արվում է Ղուկասի առաջարկով։ Միությունն ուներ իր ծրագիրն ու կանոնադրությունը, սերտ կապի մեջ էր Թբիլիսիի և Հայաստանի շրջաններում կազմակերպվող մյուս սպարտակյան միությունների հետ։

Մայիս ամսին հրատարակվում է «Սպարտակ» թերթը։ Լույս է տեսնում միայն մեկ համար, որից անմիջապես հետո թերթը արգելվում է։

Երևանի սպարտակյանների համար իսկական մկրտություն է լինում 1919 թվականի ամառը։ Ազգամիջյան կռիվները ուժեղացել էին, և միության ժողովը, Ղուկաս Ղուկասյանի գլխավորությամբ, որոշում է պայքար սկսել այդ եղբայրասպան կռիվների դեմ։ Որոշվում է թռուցիկ հրատարակել։ Ընտրվում է խմբագրական կազմ, որի մեջ մտնում են Ղուկաս Ղուկասյանը և Աղասի Խանջյանը։ Թռուցիկը տպագրվում է տպարանում աշխատող ընկերներից մեկի միջոցով։ Երբ թռուցիկը պատրաստ է լինում, բոլորը հավաքվում են Արմենակ Բուդաղյանի բնակարանում։ Բաժանվում են զույգերի։ Յուրաքանչյուր զույգին տրվում է մի կապոց թռուցիկ և մի աման սոսինձ՝ թռուցիկները փակցնելու համար։

Կեսգիշերի մոտ սկսվում է վտանգավոր առաջադրանքի կատարումը։ Համարձակություն ու հնարամտություն էր հարկավոր աննկատ մնալու և թռուցիկները նախօրոք նշված տեղերում փակցնելու համար։

Ժամը երկուսի մոտ զույգերը սկսում են վերադառնալ։ Առաջադրանքը կատարված էր փայլուն կերպով։ Բոլոր կենտրոնական փողոցներում և հիմնարկների վրա թռուցիկներ էին փակցված։ Կարո՞ղ եք պատկերացնել պատանի սպարտակյանների ուրախությունը։ Նրանց հաջողվել էր թռուցիկ փակցնել նույնիսկ անգլիական շտաբի դռանը, թեև այդ դուռը հսկում էին ժամապահները։

Լուսադեմին Ղուկասն ու Եղիա Չուբարը վերջին թռուցիկները վերցրած գնում են դեպի զինվորական հաստատություններն ու զորանոցները։ Շտաբի մոտով անցնելիս Ղուկասը քնած ժամապահի սվինի ծայրին էլ մի թռուցիկ է խրում։ Վերջին թռուցիկները նրանք ներս են գցում զորանոցների պատուհաններից։

Առավոտյան ամբողջ քաղաքը անգիր գիտեր թռուցիկի բովանդակությունը։ Թռուցիկը եղբայրության և արյունահեղություններին վերջ տալու կոչ էր անում, ավարտվում էր «Կեցցե խորհրդային Հայաստանը» նշանաբանով։

Դաշնակցական կառավարությունը սկսում է «Սպարտակ»-ի անդամների ձերբակալությունը։ Քչերին է հաջողվում խուսափել ձերբակալությունից։

— Բարև՛,—

Ասեիր, և պարզ երկինքը
իսկույն ամպրներ, եթե պետք է դա:

— Բարև՛,—

Ասեիր լռակյաց հողին,
Եվ նա ծլարկեր ու հասկավորվեր,

Եվ այն ժամանակ եթե արջին էլ ասեիր

— Բարև՛,—

Նա էլ միգուցե հենց նույն վայրկյանին
խաղալիք դառնար մի մանկան համար
Եվ մի այնպիսի կարգին խաղալիք,
որ ո՛չ լարվում է, ո՛չ էլ հասարակ բանից փչանում:
Այդպես էլ՝ օձը ծերերի ձեռքին ձեռնափայտ
դառնար,
կոկորդիլոսը դառնար պահարան խաղալիքների,
կախարան դառնար եղջերուն վայրի,
Եվ փոթորիկը բեմի պարախումբ:

Անկարելի բան աշխարհում չկա,
եթե աշխարհում հաղթում է բարին,
որ մեր բերանով դարձել է

— Բարև՛:

Ուրեմն անձնագիր ցույց տալու նման,
կենսագրություն պատմելու նման
կամ հարցաթերթիկ լրացնելու պես՝

— Բարև՛,—
Քե՛զ,
ու
Քե՛զ,
Ծանոթ-անծանոթ իմ սիրելինե՛ր:

Թող անկարելին դառնա կարելի
Աշխարհում համայն,
Ամենքիս համար
դառնա կարելի վաղն ու հենց հիմա
դառնա կարելի մեկ բառով՝
— Բարև՛...

Բանտից ազատվելուց հետո սպարտակյանները շարունակում են իրենց գործունեությունը: Մայիսմեկյան ցույցերից մի քանի օր անց, Ղուկաս Ղուկասյանը նշանակվում է Կարսի ապստամբության ղեկավար և անմիջապես մեկնում է այնտեղ: Ղուկասի գլխավորությամբ Կարսի ապստամբները մի քանի օր շարունակ դիմադրում են հակառակորդի գերակշռող ուժերին: Երբ ապստամբությունը պարտություն է կրում, Ղուկասին հաջողվում է դուրս գալ շրջապատումից և մի փոքրիկ խմբով նահանջել դեպի Ալեքսանդրապոլ: Սակայն Արգինա գյուղի մոտ վրա են հասնում դաշնակցական զորքերը: Սկսվում է անհավասար մարտ: Վիրավորված Ղուկասը ետ է մնում նահանջող ընկերներից, դաշնակցական զինվորները հարձակվում, սրախողխող են անում նրան: Այդ ժամանակ Ղուկասը ընդամենը 21 տարեկան էր:

Մայիսյան ապստամբության պարտությունից հետո կազմակերպությունը ծանր օրեր է ապրում: Նրա շատ անդամներ, այդ թվում և Աղասի Խանջյանը, նետվում են բանտ, որտեղից ազատվում են միայն Հայաստանի սովետականացումից հետո: Հայաստանի կոմերիտականների ղեկավար Արմենակ Բուդաղյանին նույնպես, որը փոխարինել էր Ղուկասին, դաշնակցականները գազանաբար սպանում են փետրվարյան ավանտյուրայի ժամանակ:

Կարճ կյանք ունեցավ «Սպարտակը», բայց նա կորիզ հանդիսացավ 1921 թվականին ստեղծված Հայաստանի լենինյան կոմունիստական երիտասարդական միության, որի 50-ամյակը տոնում ենք այս տարի:

Նրանք էլ ձեզ նման սովորական տղաներ ու աղջիկներ էին, և ընդամենը մի քանի տարով էին մեծ ձեզանից, սիրում էին երազել, երազում էին սովորել: Երբ ընկերներից մեկը հարցրել է Ղուկասին, թե նա ինչ է անելու, երբ Հայաստանում խորհրդային կարգեր հաստատվեն, Ղուկասը պատասխանել է, որ անմիջապես մեկնելու է սովորելու: Նա հաճախ է կրկնել. «Մենք շատ քիչ բան գիտենք»: Եվ այդ ծանր օրերին էլ նրանք ժամանակ ու հնարավորություն էին գտնում ինքնազարգացմամբ զբաղվելու: Ղուկասը շատ էր սիրում բնագիտությունն ու աստղաբաշխությունը, մեծ հետաքրքրությամբ կարդում էր Դարվինի ու Բրեմի գրքերը: Նա մի փոքրիկ աստղադիտակ էր գնել ու սիրում էր գիշերները բարձրանալ տանիք և ժամեր շարունակ դիտել Երևանի աստղալից երկինքը:

Սպարտակյաններից շատերին չհաջողվեց իրականացնել իրենց երազանքը: Իրենց կյանքի գնով նրանք այդ հնարավորությունը ստեղծեցին հաջորդ սերունդների և ձեզ՝ այսօրվա պիոներների համար: Նրանք քաջ էին, խիզախ ու համարձակ: Բայց պետք է ունենալ ազնիվ ու շիտակ հոգի, որպեսզի քաջությունն ու համարձակությունը ծառայեցվեն լավ ու արդար գործի: Նրանք այդ էլ ունեին:

# Ալժիրում էր

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ու մի առավոտ
Սվինների տակ քաղաքն արթնացավ:
Բոլորին դեպի ծովափ են քշում.
Այնտեղ, բարձրադիր պատնեշի վրա,
Կախաղանի տակ
Պարտիզաններ են կանգնած կողք-կողքի,
Արնոտ, կիսամերկ,
Եվ սակայն հանդարտ
Նայում են վերից:
Օ՜, այդ առավոտ
Արևը կարծես ծագում էր բոցե
Նրանց աչքերից:
— Համաձայնեցե՛ք,—
Գոռում է սպան արդեն ուժասպառ
Ու համոզել է փորձում նա կրկին,—
Ասացե՛ք, ո՞վ է ձեզ ղեկավարում,
Դուք դեռ ջահել եք, ինչո՞ւ եք մեռնում,
Երկու խոսք միայն և... ազատությո՜ւն,
Հենց այստեղից էլ կգնաք ձեր տուն:—
Լուռ, ինչպես արձան,
Տասնմեկ խիզախ կոմերիտական
կանգնած կողք-կողքի...
— Ափսո՜ս, բռնվեցինք,— մեկը շշնջաց,—
Գործեր կան դեռ շատ,
Բայց, միևնույն է, չեն մնա կիսատ...
— Կախե՜լ,— ծղրտաց սպան հուսահատ:
Բայց երբ մոտեցան դահիճները ժանտ,
Սպան արգելեց:
Ապշեց ամբոխը.
— Ի՞նչ, մի՞թե ներեց...
— Պետք չէ՛: Չե՞ք տեսնում խիզախ են ինչքան,
Այս կախաղանը արժան է թույլին ու վախեցողին,
Իսկ մենք քաջերին կհանձնենք ծովի՛ն...
Ձեզ ջրերի մեջ կնետենք հիմա,
Լողալով անցե՛ք,
Միայն կկապենք մենք ձեզ իրար հետ,
Որ դուք միշտ այդպես անբաժան մնաք...
Տեսնո՞ւմ եք ինչքան մարդասեր ենք մենք...—
Սպան հռհռաց:
Ու պիրկ լարերով մեկմեկու կապված,
Բարձր պատնեշից նետեցին նրանց:
Քաղաքը ցավից տնքաց շանթահար,
Թվաց, թե մի պահ
Ծովն ու ամբոխը ձուլվեցին իրար...

***

Եկավ վրեժի օրը երազած,
Ազատության մեջ քաղաքը ցնծաց,
Հառնեց քաղաքը փլատակներից:
Այնտեղ, ծովափնյա պատնեշի վրա,
Տասնմեկ կտրիճ կանգնեցին նորից,
Ասես թևերը ճախրանքի պատրաստ,
հզոր արձիվներ,
Ասես հենց հիմա ծովից են ծնվել,
Ապրում են նրանք կյանքով ետմահու,
Ու թվում է, թե իրենց աչքերում
Չապրված կյանքի կարոտն են պահում...

Նկ. ԶԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

# ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ ԱՄԱՌ

*Մոսկվայի Լոմոնոսովի անվան համալսարանի ֆիզիկայի ֆակուլտետի մի խումբ ուսանողներ 1959 թվականի ամռանը մեկնեցին Ղազախստան՝ աշխատելու գյուղական շինարարությունում: Այդ լավ ավանդույթը անցավ համալսարանից-համալսարան, ինստիտուտից-ինստիտուտ և տարածվեց ամբողջ Միությունում:*

*Այժմ ուսանողների մեծ մասը ամռան ամիսներին աշխատում է շինարարություններում: Ուսումնական տարվա լարված պարապմունքներից, քննություններից հետո, ուսանողական գնացքները ուղղություն են վերցնում դեպի մեր լայնածավալ երկրի տարբեր վայրերը, իսկ ավելի շատ... Ղազախստան, ուր իշխողը հարթ-հավասար տափաստանային անսահմանությունն է, անապատի բարկ արևը, ավազածեծ քամին ու մեկ էլ հյուրասեր ղազախը՝ կովացնող կումիսով լի գավաթը ձեռքին.*

*— Խմե՛ք, կմոռացնի ճանապարհի հոգնությունը:*

*Ամռան այդ տոթակեզ օրերին, ուսանող շինարարներն այնտեղ հիմքեր են փորում, հում կավից աղյուս պատրաստում կամ արդեն թրծվածներով պատեր կանգնեցնում, երկու ամսվա ընթացքում կառուցում դպրոցներ, մսուր-մանկապարտեզներ, ակումբներ:*

*Պատերը հեշտությամբ չեն բարձրանում: Շինարարներին հաճախ խանգարում է տափաստանի քամին, որ ավազահատիկներ է լցնում նրանց հագուստի ծալքերը, գրպանները, աչքերը, ականջները, անգամ ատամների տակ: Բայց անախորժը ո՛չ այնքան քամին է, ավազն ու արևը, որքան անձրևները: Տապն ու քամին կարելի է հաղթահարել կամքի ուժով, տոկունությամբ,*

# ՄԵՆՔ՝ ԱՌԱՋԻՆ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆՆԵՐՍ...

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

Աշուն էր, տերևաթափ: Քոչը սարերից իջել էր անտառոտ ձորերը, ուր մեր ձմեռանոցն էր: Ես և իմ ընկեր Գրիգորը տավար էինք պահում գոմահանդում և երեկոները բուխարու կրակի առաջ լսում էինք մեր հարևան Ռուբենի պատմությունները ռուսական հեղափոխության մասին: Վոլգայի տափաստանում նա մասնակցել էր քաղաքացիական կռիվներին ու պատմում էր հեքիաթի նման.

— Գայի կորքերը քաչքաքամու նման վրա տվին սպիտակներին, Ցարիցին քաղաքը ապատեցին ու հեռագիր տվին Լենինին, թե՝ ամեն վերջին դիմաց մի քաղաք ենք խլելու թշնամուց...

— Ի՞նչ վերք, քեռի՛ Ռուբեն:

— Թշնամու կողմից մի կնիկ կեղծավոր մոտենում է Լենինին ու վրեն ատրճանակով կրակում...

— Վա՜... Նամա՛րդ... մայերիցը պիտի բռնես շլինքը պոկես... Բա Լենինի կորքը ե՞րբ է գալու, ախր էլ չենք դիմանում,— հարցրեց իմ ընկեր Գրիգորը, որ մեկնից մեծ էր մեկ-երկու տարով և ավելի շատ էր հասկանում «աշխարհի բաներից»:

— Կգա՜...— ուրախ աչքով արավ քեռի Ռուբենը,— արդեն Հայաստանի սահմանին է հասել...

Այո՛, ճիշտ ասաց Գրիգորը, այլևս չէինք դիմանում, գավառապետի հրամանով քշում տանում էին մեր պահած անասունները, խոտը: Մի տարի նույնիսկ Դիլիջանի գնդի պինվորները խակ-խակ հնձեցին մեր արտերը՝ իրենց ձիերի համար: Ժողովուրդը աչք չէր բացում սովից ու ազգամիջյան կռիվներից: Ու ճրնշումին չդիմանալով, մեր գյուղը երկու անգամ ապստամբեց ու երկու անգամն էլ կառավարության կորքը շրջապատեց գյուղն ու գնդացրերից կրակ բացեց բնակչության վրա: Այդ տարվա մայիսին ապստամբեցին նաև մեր գավառի շատ գյուղեր՝ Սև քարը, Ջարխեչը, Բերդը և ուրիշները: Կոմունիստ Ենոք Մկրտումյանը իր քաջարի ընկերներով ոտքի հանեց նաև Դիլիջանի գունդը, իսկ Եղիշե Շամախյանը՝ իր ստեղծած «Սպարտակ» երիտասարդական կազմակերպության խիզախ անդամներին... Բայց... ապստամբությունը խեղդվեց արյան մեջ, գնդակահարվեցին նաև ղեկավարներ Ենոք Մկրտումյանը, գեներալ Բաղդասարովին պինաթափ անող ֆեդֆերել Ակոբջանովը և ուրիշ շատերը: Մեր դպրոցական ընկեր Բադիշին կապել էին հեռագրասյունից ու հարվածում էին հրացանի խըշակոթով, իսկ «Սպարտակի» անդամ Գուրգեն Դավթյանին մի գիշեր մենք պահեցինք մեր ձմեռանոցում, մեր հին հագուստը հագցրինք և իմ հորեղբոր որդի Հայկի հետ լուսադեմին սարերով փախցրինք Լոռի:

— Ընկերներիցս շատերը ձերբակալված են... «Սպարտակը» ցրիվ եկավ...— կսկիծով հայտնեց նա հրաժեշտ տալիս:— Բայց մոտենում է վրեժի օրը,— ձայնը բարձրացրեց նա, և նրա խոշոր, թուխ աչքերում անսովոր կայծեր երևացին...

Այնպես որ թեև փոքր էինք՝ 15—16 տարեկան, բայց դեպքերը մեզ ժամանակից շուտ հասունացրել էին: Մանավանդ, որ այդ տարվա ապրիլի վերջերքին Իջևան կոռի տարված սայլերը թաքուն գրականություն բերին, որից մենք՝ գրագետ պատանիներս շատ բան իմացանք: Մագաղաթի նման դեղին ու կոշտ տըպված գրքերը Հայաստանի համար Մոսկվայում հրատարակել էր Հայկական գործերի կոմիսարիատը, որի ղեկավարը բանաստեղծ Վահան Տերյանն էր: Մեր հա-

*համառությամբ, մի խոսքով՝ երիտասարդությամբ: Իսկ անձրևը օրերով չի թողնում աշխատել, օրերով թերթ ու նամակ չես ստանում: Հողը անձրևից թուլանում է, և մեքենաները միայն տեղապտույտներ են տալիս:*

*Այդպիսի օրերին ուսանողները համերգներ են տալիս տեղի բնակչության համար, կեկուցումներ կարդում, պարապմունքներ են անցկացնում դպրոցականների հետ, մարզական խաղեր կազմակերպում, և օրը իզուր չի կորչում:*

*Անցնում են ամռան երկու ամիսները: Այդ ընթացքում տեղի բնակիչները այնքան են կապվում, մտերմանում ուսանողների հետ, որ հրաժեշտի պահին հարազատների նման գրկախառնվում են, հուզված, արցունքների միջից ժպտում ու թախանձում, որ հաջորդ ուսանողական ամռանը նորից իրենց մոտ գան նրանք:*

*Հայ ուսանող շինարարների յոթ հազարանոց բանակը այս տարի իր օգնությունը ցույց տվեց նաև Տուլայի ավտոգործարանի, Յուրի Գագարինի ծննդավայրում կառուցվող նոր քաղաքի, Հայաստան բերվող գազամուղի և Արփա-Սևանի շինարարություններին: Ուսանողական-շինարարական 13 ջոկատների փոխանակում կատարվեց ԳԴՀ-ի, Հունգարիայի, Լեհաստանի ժողովրդական հանրապետությունների հետ:*

*Այս տարի ուսանող-շինարարները իրենց աշխատանքները նվիրեցին Հայաստանի լենինյան կոմերիտմիության 50-ամյակին: Նրանց լավ պատրաստվածությունն ու ջանասիրությունը նպաստեց նշանավոր տարելիցը արժանավոր դիմավորելու գործում իրենց արժեքավոր ավանդը բերել:*

*ԼԵՎՈՆ ՂԱԶԱՐՅԱՆ*

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

րևան Աբրահամանց Ստեփանի սայլի մեջ, խոտի տակ թաքցրած գրականությունից հիշում եմ Կայանի «Ուր է ելքը» գիրքը, «Կովկասյան Վանդեան», Լենինի «Պետությունը և հեղափոխությունը»՝ Տերյանի թարգմանությամբ: Նաև մի պլակատ, ուր ցույց էր տրված, թե ինչպես մի բանվոր և մի գյուղացի շուռ են տալիս ցարի գահը, իսկ Նիկոլայ ցարը, սարսափն աչքերում, կառչել է գահի կոտրված բռնակներից: Եվ որ գլխավորն է՝ Լենինի գունավոր նկարը՝ իմաստուն ճակատը լայն, աչքերը կկոցած:

Գրքերը տարա ձմեռանոց և մեր Տանձուտի թավուտում կարդում էի իմ տավարած ընկերների համար. այն ժամանակ ես ամենագրագետն էի մեր թաղում, 5 դասարանի կրթություն ունեի...

Մի օր, լավ հիշում եմ, 1920 թվականի նոյեմբերի 29-ին, Տանձուտի ծառերի մեջ զինելավոր մարդիկ հայտնվեցին: Նրանք «Մոսին» հրացաններ ունեին և յուրաքանչյուրի գոտուց մի նռնակ էր կախված: Տարօրինակ էին նրանց գլխարկները. ծայրը՝ սուր, ճակատին՝ մի մեծ կարմիր աստղ... Առաջին կարմիրբանակայիններն էին: Սիրտս թնդաց, ընդառաջ գնացի տատանվելով, ճակատների կարմիր աստղով հմայված:

— Զդրա՛ստվույտե, բեբյա՛տա,— խռոխտ կանչեց ռուս զինվորը և մեկնեց ձեռքը:

— Զդրաստի... — ձայն տվինք ես և Գրիգորը կարմրատակելով:

— Զդես դաշնակ ե՞ստ...

— Դաշնակ նետու...

— Խլե՞բ...

— Խլեբ նետու, համա կարտոշկա եստ...

— Օչեն խորոշո, օչեն խորոշո,— ուրախացան քաղցած զինվորները՝ մեր օջախի շուրջը բոլորելով:

Մինչ կարտոֆիլը կխորովեր, զինվորները մեզ հասկացրին, որ Դիլիջանում արդեն խորհրդային իշխանություն է, իսկ իրենք 11-րդ բանակի հետախույզներից են:

Անպատմելի ուրախություն պատեց մեզ. ես իսկույն վազեցի խոտի դեզի մեջ թաքցրած գրքերն ու պլակատները բերի փռեցի առաջները: Մեր հյուրերը թե՛ զարմացան և թե՛ շատ ուրախացան. երևի չէին սպասում, որ հեղափոխական գրականությունն ու Լենինի նկարը հասած կլինեն մեր լեռնոտ երկրի այդ հեռավոր անկյունները:

Կարտոֆիլը կերան և հրաժեշտ տալիս ձեռքով թփթփացրին մեր ուսերը.

— Մոլոդցի, ռեբյատա... վոտ նաստոյաշչիե կոմսոմոլցի...

Այսպես մեր կյանքում առաջին անգամ մենք լսեցինք կոմսոմոլ բառը:

— Մի գնանք գյուղ՝ տեսնենք ինչ է կատարվում,— առաջարկեց Գրիգորը և բարձրանալով խրճիթի կտուրը գոռաց.

— Ա՛յ չոբաններ, ա՛յ տավարածներ, հավաքվեցեք գյո՛ւղ գնանք... Բոլշևիկները եկել ե՛ն, բոլշևիկները եկել ե՛ն, հավաքվեցե՛ք...

Մահակներն օդում պտտելով, ուրախ գոռում-գոչումով հավաքվեցին մեր գոմահանդի ջահել տավարածները և անտառների ու ձորերի միջով ճամփա ընկանք դեպի գյուղ: Մեզ առաջնորդում էր առասպելական Գայի զինվոր Ռուբենը և անտառները մենք թնդացնում էինք նրա սովորեցրած երգով.

— Հրաժարվենք, ընկերներ, հին օրենքներից,
Նրանց փոշին թափ տանք մեր ոտքերից...

Երեկոյան գյուղ մտանք և ամբողջ թափորով ներկայացանք նոր կազմակերպված հեղկոմին: Նախագահը սլացիկ հասակով, արծվաքիթ մի երիտասարդ էր՝ Ալեքսանդր Եսայանը:

— Տղե՛րք,— ասաց,—դուք բոլորդ էլ իսկական կոմսոմոլացու եք, գնա՛նք կոմսոմոլ գրվեցեք...

# ՁԵՎԸ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅԱՆԸ ՉԷՐ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ

(Հատված «Հուշեր»-ից)

*ՄԱՐՈ ԱԼԱՋԱՆ*

Որբանոցը իրարանցման մեջ էր: Կանգնել էինք խումբ-խումբ, և ամեն մեկը իր հասկացած ձևով բացատրում էր երկրում տիրող դրությունը: Մեկը, թե.

— Վա՜յ մեզ, թուրքերն Արազն անցել, հասել են Էջմիածին, շուտով Երևան կմտնեն և մեզ բոլորիս կմորթեն:

Մյուսը, թե.

— Աղջի՛, ոչ թե թուրքերը, այլ՝ պոպոզավոր բոլշևիկներն են գալիս: Ասում են, որ դրանք կացիններով են... վա՜յ մեզ, ի՞նչ անենք, ո՞ւր թաքնվենք, որ դրանց կացինների բերանը չընկնենք:

— Չէ՛, չէ՛, աղջի՛, ճիշտ չի, երեկ օրիորդ Արփենիկն ասաց, որ պոպոզավոր բոլշևիկները աղքատների և որբերի պաշտպաններն են:

— Աղջի՛, դրանք հա՞յ են, թե՞ թուրք,— հարցրեց Մարթա Ամիրյանը:

— Ո՛չ հայ են, ո՛չ էլ թուրք,— պատասխանեց մեկ ուրիշը:

— Բա ի՞նչ ազգ են:

— Ասում են, որ դրանց մեջ բոլոր ազգերից կան:

— Հա՞յ էլ:

— Ասում են, բայց ես ճիշտը չգիտեմ:

Մեծ աղջիկներն ասում էին, որ այս գիշեր դաշնակները փախան և Հայաստանը խորհրդային դարձավ: Այդ ի՞նչ էր նշանակում, չէինք հասկանում:

Այդ օրը օրիորդ Արփենիկի և Հրանտ Ղարիբյանի տրամադրությունը արտակարգ բարձր էր: Նրանք մեզ շարք կանգնեցրին և յուրաքանչյուրիս մեկական դրոշակ տվին և մեր շարքերի առջև ընկած, մեզ առաջնորդեցին դեպի Քանաքեռի բարձունքը, ողջունելու 11-րդ բանակի մուտքը Երևան:

Ովքե՞ր էինք այդ մենք. եղեռնի զոհերի որբացած երեխաներ, որոնց համար ամերիկյան «բարեբարները» որբանոցներ էին բացել, ընդգրկել մեզ նաև սկաուտական կոչվող պատանեկան մարզական կազմակերպության մեջ: Այս կազմակերպությունը մարզական էր համարվում, բայց մանկատան տնօրենները նպատակ ունեին այդ անվան տակ մեզ

Դպրոցի դահլիճում կայացավ գյուղի երիտասարդության առաջին ժողովը, ուր և հիմնադրվեց կոմերիտմիության առաջին բջիջը: Դիլիջանից եկել էր «Սպարտակ» կազմակերպության ներկայացուցիչ Գրիգոր Մանթաշյանը՝ բարալիկ մարմնով, գլուխը մի փոքր խոշոր ու կլոր, ճակատը լայն մի պատանի, որ նոր էր ազատվել դաշնակների ճանկից: Բացատրեց կոմերիտմիության խնդիրը և այսպես վերջացրեց.

— Սրանից հետո ձեր առաջ բաց են լուսավորության դռները...

Էլ դրանից ավել ես ի՞նչ պիտի ուզենայի, ես, որ ծարավի էի ուսման: Ուստի երբ սկսեցին հիմնել կազմակերպությունը, իմ ավագ ընկեր Գրիգորից հետո ցուցակում ես դրի իմ կոպիտ ստորագրությունը:

Այդ օրվանից կոմերիտմիության բջիջը աշխույժ գործունեության անցավ: Նրա ղեկավարը մի կիրթ երիտասարդ էր՝ Միսաք Թումանյանը: Նա մեկ շաբաթօրյակի էր տանում և ուսուցչի նվագակցությամբ նորոգում էինք գյուղի քանդված ճանապարհներն ու աղբյուրները: Ներկայացումներ էինք կազմակերպում, թերթեր էինք ընթերցում, կուլակներից մթերք էինք բռնագրավում և ուղարկում Կարմիր բանակին: Եվ ամեն օր ժողով էինք անում, որ անպայման սկսվում ու վերջանում էր ոտնկայս «Ինտերնացիոնալ» երգելով: Ա՜խ այդ երգը, որ մեր պատանի հոգիները առնում տանում էր ապագայի լուսավոր ափերը...

Ափսո՜ս, երկար չտևեց մեր գործունեությունը. բռնկեց դաշնակների փետրվարյան ավանտյուրան: Թշնամուն անցան Երևանը, Սևանի ավազանը, Դարալագյազը...

Այն ժամանակ լեգենդար Գևորգ Աթարբեկյանը մեր Ղազախի պարտիզանական ջոկատների գլուխն անցավ և փետրվարյան բքին գրոհի գնաց դաշնակների դեմ:

Մեծ կռիվներ եղան Սևանի սառցապատ ափերին, ուր և կոմունարները տվին առաջին զոհերը:

Չեմ մոռանում այն օրը, երբ Դիլիջանում հողին հանձնեցինք մեր կազմակերպության հիմնադիր Գրիգոր Մանթաշյանին: Սգո միտինգի ժամանակ նրա հայրը՝ դալլաք Սահակը, պատշգամբից դիմեց փողոցում ամբոխված ժողովրդին.

— Իմ որդին կռիվ գնաց ժողովրդի գործի համար... Դո՜ւք ողջ մնաք, ափի՛կ հայրենակիցներ...

Ասաց ու թաշկինակը հպեց աչքերին:

Մենք՝ պատանի կոմունարներս համազարկ տվինք դեպի անմարդար երկինքը և մեր հրացանների որոտով արտահայտեցինք մեր պատանի հոգու ցասումը:

Դու կռվի գնացիր կատաղի պայքարում,
Ընդդեմ բռնակալ արյունոտ աշխարհի...

Նույն երեկոյան պինանոցից փամփուշտ ու արկեր բարձեցին մեր սայլերին ու մեր գումակը գիշերով ճամփա ընկավ դեպի Սևան, որի ափերից հեռավոր ու խուլ որոտներ էին լսվում՝ «Դո՜ւմ-դո՜ւմ...»

Բուքը ոռնում էր Սեմյոնովկայի կեռմաններում, լանջերից քամին ձյունը բերել լցրել էր խճուղին: Ծանր բարձած սայլերը թաղվում էին ձյան կույտերի մեջ, եզները ուժ էին տալիս, ուսներս դեմ տված հրում էինք սայլերը, բայց գումակը դանդաղ էր առաջ գնում: Ձեռքներիս փչելով նոր էինք տալիս ձյունը, մետր առ մետր ճամփա էինք բացում առաջին սայլի համար, և մեր քարավանը ձգվում էր ոլոր-մոլոր, ձյունածածկ կեռմաններում: Մենք դադար չէինք տալիս ո՛չ մեկս, ո՛չ լծկաններին, մենք խարույկ չէինք վառում, մեր սառած մարմինը տաքացնելու համար:

Ժամանակ չկար, լուսադեմին փամփուշտ պիտի հասցնեինք Սևանի ափին կռվող կոմունարներին...

անուղղակիորեն ներարկել աշխատավոր ժողովրդին խորթ իրենց գաղափարները: Սկաուտական կազմակերպությունը, որ այժմ էլ գոյություն ունի կապիտալիստական երկրներում, ունի իր համազգեստը: Մանկատանը մեզ սկաուտական համազգեստ էին հագցրել, որի գլխարկին փակցված էր դաշնակցական տխրահռչակ կառավարության եռագույն դրոշը խորհրդանշող նշան:

Ահա և մենք, որբ սկաուտներս, գնում էինք ազատարար 11-րդ բանակի մուտքը ողջունելու, հագներիս՝ սկաուտական համազգեստ, գլուխներիս՝ դաշնակցության եռագույնը, իսկ ձեռքներիս՝ խորհրդային կարմիր դրոշակը: Այդ օրը այնքան բուռն էր ու փոթորկոտ, որ ոչ ոք իր շուրջը նայելու ժամանակ չուներ: Բոլորիս հայացքները ուղղված էին դեպի Քանաքեռի բարձունքը:

Ահա և 11-րդ Կարմիր բանակը, փոշու ամպով պարուրված ձիավոր զորքը: Պողոզավոր գլխարկների առաջամասում երևում էին մեծ ու կարմիր հնգաթև աստղերը: 11-րդ բանակը ալ կարմիր դրոշակները պարզած, մարտական հեղափոխական երգերով, կուռ շարքերով Երևան մտավ: Իսկ մենք նույն ուրախ շարքերով, ալ կարմիր դրոշակները ձեռքներիս, սկաուտական համազգեստով որբանոց մտանք:

## ԱՌԱՋԻՆ ԿՈՄԵՐԻՏԲՋԻՋԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԱՂՋԻԿՆԵՐԻ 2-ՐԴ ՈՐԲԱՆՈՑՈՒՄ

1920 թվականի դեկտեմբերի 12-ն էր: Մեր դասերը պատրաստելու ժամին, դասասենյակ մտան երկու աղքատիկ հագնված, տանջված դեմքերով, նիհար ու գունատ երիտասարդներ: Ընդհանուր բարև տալուց հետո, նրանք մոտեցան ուսուցչուհուն, առանձնացան: Մի քանի րոպե խոսելուց հետո դարձան մեզ: Օրիորդ Արփենիկը մեր դասը վերածեց ժողովի, բացատրեց երիտասարդների գալու նպատակը (չմոռանամ նշել, որ այդ երիտասարդներից մեկը Կարո Սարուխանյանն էր, իսկ մյուսը՝ Գուգուշ Շահբազյանը, ասում էին, որ երկուսն էլ «Սպարտակ» միության անդամներն էին):

Առաջինը խոսեց Կարո Սարուխանյանը.

— Ընկերնե՛ր...

Մեր ականջին շատ տարօրինակ ու անսովոր հնչեց նրա «ընկերներ» բառը: Մենք տարիներ շարունակ լսել էինք «օրիորդ» և «պարոն» բառերը: Երբ Սարուխանյանն ասաց «ընկերներ», աղջիկներից մեկը բացականչեց.

— Մենք հո տղա՞ չենք, որ մեզ «ընկեր» եք ասում:

Սարուխանյանը մեղմ ժպտալով շարունակեց իր զրույցը.

# ՓԱՌՔԻ ԱՍՊԵՏՆԵՐԸ



ՆԵԼՍՈՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ

*Այդ տղաներից շատերը ռազմաճակատից տուն չդարձան: Նրանց լուսանկարները երիզվեցին սև ժապավեններով և լուռ ու մունջ փակցվեցին տների, դպրոցների պատերից:*

*Նելսոն Ստեփանյան, Արտաշես Հարությունյան, Խորեն Խաչատրյան՝ Սովետական Միության հերոսներ: Եվ հետո կրկին անուններ՝ Լևոն Աբրահամյան, Հենրիկ Աղաբաբյան, Վիգեն Երիցյան, Մարսել Մարտիրոսյան, Օսիկ Փափուչյան... ու դարձյալ անուննե՛ր, անուննե՛ր, անուննե՛ր... 170 հոգի:*

*Նրանք դեռ նոր-նոր էին ելել դպրոցի դասարաններից և ռազմաճակատ էին մեկնում՝ գրպաններում կարմիր կոմերիտական տոմս...*

*Տասնամյակներ են անցել, և դպրոցի «Կարմիր հետախույզների» ջոկատը դեռ որոնում է անհայտ մնացածների հետքերը, նրանց կորած անուններն ու կենսագրության անհայտ էջերը: Էդվարդ Ճվճյանի մասին միայն վերջերս իմացան, շուտով նրա լուսանկարն էլ կավելանա նախորդների կողքին:*

*1944 թվականի սեպտեմբերի 2-ի հրամանագրով Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Գերագույն սովետը, հայրենիքին նվիրված արժանավոր կադրեր դաստիարակելու համար, Երևանի Մաքսիմ Գորկու անվան դպրոցը պարգևատրեց պատվոգրով:*

*Դպրոցն իր սաներին չի մոռանում ու չի մոռանա: Նրանց անուններով են կոչվում դպրոցի բոլոր պիոներական ջոկատները: Արդեն մի քանի տարի է, ինչ այստեղ գործում է «Փառքի սրահը»: Դպրոց մտնողը մի պահ ակնածանքով կանգ է առնում կոհվածների լուսանկարների առաջ և ապա շարունակում ճանապարհը: Այս աշնանը այդ սրահը ավելի կշքեղացվի, կավելանան նոր ցուցանմուշներ, իսկ դրա կողքին մտադիր են ստեղծել «Զոհված հերոսների թանգարան», ուր կցուցադրվեն արխիվային նյութեր, փաստաթղթեր, լուսանկարներ:*

---

— Աշխարհում մարդիկ երկու խմբի են բաժանվում, մեկը բանվորներն ու գյուղացիներն են, աշխատավորները, իսկ մյուսը հարուստներն ու հաստափոր բուրժուաներն են, շահագործողները, որոնք հարստացել են բանվորների ու գյուղացիների աշխատանքի արդյունքը խժռելով:

Իր պարզ ու հասկանալի խոսքից հետո, Սարուխանյանը հայտարարեց.

— Ընկերնե՛ր, այսօր ձեր որբանոցում կազմակերպելու ենք առաջին կոմերիտական բջիջը, ովքեր ցանկանում են, թող ցուցակագրվեն:

Թե ինչ բան էր կոմերիտական բջիջը, մեր ուղեղի բջիջներում այնպես էլ չտեղավորվեց, բայց ինչ-որ լավ բան էր երևում: Բացառությամբ երկուսի, բոլորը ցուցակագրվեցին: Ցուցակագրվեցինք նաև մենք՝ սկաուտներս: Ընդամենը չորս ամսվա սկաուտներ էինք, երբ մտանք կոմերիտմիության մեջ: Մտանք կոմերիտմիության շարքերը, հագներիս սկաուտական համազգեստ, արտներումս՝ ոխ ու վրեժ հանդեպ «հաստափոր բուրժուաների», որոնք հարստանում էին բանվորներին և գյուղացիներին շահագործելով:

Անցան ամիսներ, մենք դեռևս մեր սկաուտական համազգեստով, առավոտյան գնում էինք սկաուտական մարմնամարզական պարապմունքների, իսկ երեկոյան կոմերիտական բջջային ժողովների ու պարապմունքների: Մի խոսքով, մեր ձևն ու բովանդակությունը մնում էին խիստ հակասության մեջ, և ոչ ոք էլ այդ մասին մեզ դիտողություն չէր անում: Եթե անեին էլ, իմաստ չուներ, մենք ուրիշ զգեստ չունեինք, որ հագնեինք:

(Շարունակելի)


ՕՍԻԿ ՓԱՓՈՒՋՅԱՆ


ԼԵՎՈՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ


ՎԻԳԵՆ ԵՐԻՑՅԱՆ


ՄԱՐՍԵԼ ՄԿՐՏԻՐՈՍՅԱՆ

Շուտով դպրոցը կբոլորի իր գոյության 50 տարին, արդեն պատմություն դարձած կեսդարյա փառավոր մի ուղի: 1928 թվականից սկսած նա կյանքի ուղեգիր է տվել իր սաներին, որոնք գնացել դարձել են գիտնականներ, արվեստագետներ, գյուղատնտեսներ, ուսուցիչներ, պետական-կուսակցական գործիչներ: Վերջերս դպրոցի պիոներները եղան դպրոցի նախկին սան, Սովետական Միության հերոս, գյուղմեխանիկացիայի և էլեկտրիֆիկացիայի գիտա-հետազոտական ինստիտուտի դիրեկտոր Խորեն Խաչատրյանի մոտ, լսեցին նրա պատերազմական հուշերը, երկար վրուցեցին դպրոցի նախկին շրջանավարտների մասին:

1970 թվականին Հայաստանի կոմերիտմիության Կենտկոմը դափնեկրի կոչում շնորհեց դպրոցի նախկին սան, այժմ համալսարանի տեսական ֆիզիկայի ամբիոնի դոցենտ, գիտությունների թեկնածու Դավիթ Սեդրակյանին:

Այսպես անցնում են օրերը, տարիները. իրենց ետևից թողնելով դեպքերի, դեմքերի, հիշողությունների երկար մի շարան: Իսկ դպրոցը շարունակում է ապրել իր առօրյա բուռն կյանքով, ամեն եկող սերնդի փոխանցելով այն բարի ավանդները, որ ձեռք է բերել իր գոյության կեսդարյա ճանապարհին:

ԴԱՎԻԹ ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ԼՈՒՍԱԲԱՑԸ ՍԵՎԱՆԻ ՎՐԱ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Հեռվում լուծվեց դանդաղ
Մութի մանվածքը նուրբ,
Ժպտաց լուսաթաթախ
Սևանն իմ ալեծուփ:
Ալիքները քնած
Նազով իրար եկան,
Ու փարվեցին նրանց
Շողերն արեգական:
Փչեց քամին անհոգ՝
Գագաթներից բարձրիկ



Այդ ի՞նչ երգ է, արդյոք,
Այսքան վեհ ու քաղցրիկ...
Ծերմա՜կ-ճերմակ մի ճայ,
Ոտքը ջրին հենած,
Շուրջս՝ կապույտ ու կայծ,
Շուրջս՝ երգեր կենաց:
Իմ նավակն է լողում
Լճում ալեծածան
Ու ետևից թողնում
Ջրի մի նեղ կածան:
Ափեր չկան կարծես,
Լեռներ չկան վայրի,
Ես գնում եմ այդպես
Քանի՜ հազար տարի:

Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



# Բ Ա Զ Ե Ն

*ՀԱՅԿԱԶ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Մայրս ինձ էր հանձնարարել հսկելու մեր ճտերին:

Ճտերը որքան մեծանում, այնքան համարձակ էին դառնում: Մայրը կոթկոթում, կանչում էր, բայց իզուր, ճտերն աներկյուղ հեռանում էին: Հսկելը դժվարացավ. թուխսը մի կողմ էր գնում, ճտերը՝ մի կողմ, չէի իմանում, որի ետևից գնամ: Ճարս կտրված, Կչկչանի ոտքի թելին մի թել էլ ավելացրի և կապեցի մեր բակի ծառից: Ավելի վատ եղավ. ճտերը թողնում էին մորը, մտնում ցանկապատի եղինջների մեջ, դե՛, արի հանի:

Տեսա թխսին կապելով բան դուրս չեկավ, նրան արձակեցի ծառից, ճտերին կապեցի իրար, թելի ծայրն էլ ամրացրի Կչկչանի ոտքից: Վատ բան չէի մտածել. թուխսը կգնար, ճտերն էլ՝ ետևից: Ճտերը միասին կլինեին, մայրը կհսկեր նրանց, իմ գործն էլ կհեշտանար:



Կեսօր էր: Կչկչանը քուջուջ էր անում մեր բակի ընկուզենու տակ՝ ճտերին դեղձի շարուկի նման քարշ տալով ետևից: Ինքնագոհ իմ հնարամտությունից, հանգիստ մեկնվել էի տանը՝ թախտին: Հանկարծ Կչկչանը տագնապալի ծղրտաց: Վեր թռա, բայց արդեն ուշ էր: Բազեն դարանակալել էր և հարմար պահին հարձակվել թխսի վրա: Մի ակնթարթում անիրավը երկինք հանեց բոլորին: Ճտերը ծվծվում էին, օգնություն կանչում, բայց երկնքում ի՞նչ կարող էր անել մայրը: Խեղճն արյունաթաթախ սևկվել էր բազեի ճանկերում:

Գոռացի՜, աղաղակեցի՜, բայց իզուր:

Բազեն թեթև սլացքով թռավ գյուղի վրայով և անտառ տարավ մեր Կչկչանին՝ քսան ճտերի հետ:

Եթե կանչը գոնե 10 րոպե ուշ հնչեր, կամ գոնե հինգ րոպե ուշ... Հինգ րոպեում կըհասցներ կարդալ դասի կեսը: Հետո մինչև ընկեր Մուշեղյանը դասարան գար, կըրացներ դասամատյանը, ներկա-բացակա աներ, ինքը կհասցներ մինչև վերջ կարդալ և գոնե մի «երեք» կստանար: Բայց կանչը արդեն հնչել էր, ընկեր Մուշեղյանը ցուցափայտն ու քարտեզը ձեռքին կանգնել էր դասարանի դռան մոտ: Ուշացած, հեւալով ներս ընկավ Արշավիրը: Նա արագ հանեց վերարկուն ու նստեց: Ընկեր Մուշեղյանը սպասում էր, որ դադարեին բոլոր շշուկները, բոլորը կզաստ կանգնեին նստարանների մոտ ու նոր միայն դասարան մտներ: Իսկ շշուկները չէին դադարում: Համիկը երեկ կինո էր գնացել ու շտապ-շտապ պատմում էր ունեներին: Վարսիկն ու Ցողիկը հանգիստ կանգնած ասում էին: Նրանց դեմքից երևում էր, որ դասը լավ են սովորել: Երանի՜ նրանց: Երեկ երևի նրանք բակում չեն սղղացել, այնպիսի հրաշալի ձյուն էր գալիս, խոշոր, ճերմակ փաթիլներով:

— Նստե՛ք:

Ընկեր Մուշեղյանը մի հայացքով ընդգրկեց դասարանը: Երավիկը անհանգիստ շարժվեց տեղից, գըլուխը թեքեց պատուհանի կողմը, որ աչքերը չհանդիպեն ընկեր Մուշեղյանի հայացքին: Անվերջանալի երկար րոպեներ էին:

— Գուրգեն, ե՛կ:

Գուրգենի պատմածից Երավիկը ոչինչ չհասկացավ, որովհետև լարված կարդում էր.

— Նստի՛ր, «չորս»:

Գուրգենը ուրախացած նստեց, օրագիրը տվեց Աշոտին, որ փոխանցի: Օրագիրը ձեռքից-ձեռք անցավ, ընկեր Մուշեղյանը «չորս» նշանակեց, օրագիրը ետ եկավ Գուրգենի մոտ:

«Հիմա ինձ կհարցնի»,— մտածեց Երավիկը:

Գրիչը դանդաղ սահում էր դասամատյանի համարների վրայով:

«...Եթե ինձ հարցնի, գոնե մի «երեք» կստանամ»:

— Ռուզա՛ննա, սովորե՞լ ես:



# ՍԱՐՍԱՓԸ

ՑՈԼԱԿ ՍԱՐԴԱՐՅԱՆ

— Այո՛,— կամացուկ ասաց Ռուզաննան:

Բայց հենց սկսեց պատմել, նրա շփոթմունքից ու կմկմալուց բոլորն էլ կգացին, որ չի սովորել: Մտածել է, որ երկու «չորս» ունի ու չի սովորել:

Երազիկը, որ հանգստացել էր, նորից լարվեց:

— Քեզանից բոլորովին չէի սպասում,— ասաց ուսուցչուհին:

«Լավ եղավ,— մտածեց Երազիկը,— մի օր սովորում է, տաս օր չի սովորում և դեռ պարծենում է, թե ինքը գիտե երբ սովորել»:

Հետո նա հիշեց, որ այսօր ինքն էլ դասը չի սովորել, և նորից կռացավ գրքի վրա:

«Որ ինձ հարցնի, գոնե «երեք» կստանա՞մ»:

— Զարե՛հ, դո՛ւ եկ:

Տղան անշտապ ոտքի կանգնեց:

«Երնի լավ է սովորել, որ օրագիրը տանում է»,— մտածեց Երազիկը»:

Զարեհը «հինգ» ստացավ:

«Հիմա որ հարցնի, գուցե «չորս» էլ ստանամ»:

Այդ մտքից Երազիկը թեթևացավ: Այլևս ոչինչ սարսափելի չէր: Ընկեր Մուշեղյանը նորից դասամատյանի գնահատականներին էր նայում: Երբ լռությունը տևական դարձավ, Երազիկը նորից սկսեց անհանգստանալ:

«Մի՛ վախենա»,— իրեն հուսադրեց նա:

— Ավետիսյա՛ն:

Ընկեր Մուշեղյանը գրիչը դրել էր սեղանին ու նայում էր Երազիկին: Սիրտը արագորեն վարկեց, երբ ոտքի էր կանգնում, թրմփոցով գիրքը վայր ընկավ: Երազիկը մտածեց, որ արդեն ոչինչ չի հիշում, ամեն ինչ գլխից թռել է:

— Ե՛ս:

Ընկեր Մուշեղյանը թաքուն ժպտալով նրան էր նայում:

«Երնի կգացել է, որ դասս չեմ սովորել: Չէ, դըժվար թե»:

— Դո՛ւ չէ, Արմենը:

Երազիկը թեթևացած շունչ քաշեց ու աշխատեց այնպես նստել, որ ոչ ոք չտեսնի իր ուրախությունը:

Վերջացավ, իրեն այլևս դաս չի հարցնի:

Շուրջը նայեց: Աշոտը կռացած բուրգեր էր նըկարում ու սֆինքս հիշեցնող ինչ-որ բան: Այդ բուրգերը Երազիկին ամենախնկական բուրգեր թվացին՝ խորհրդավոր ու հրաշալի:

Արմենը արդեն նստել էր: Ընկեր Մուշեղյանը մեղմ, երգեցիկ ձայնով պատմում էր նոր դասը: Դասարանում ոչ մի շշուկ չկար, պատուհանից դուրս ձերմակ ու հրաշալի իրենց քաղաքն էր:



ՆԿ. ՀԵՆՐԻԿ ՄՈՒՐԱՎՅԱՆԻ

# ԵՐԱՄԸ ԿՈՐՑՐԱԾ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Քայլում են խումբ-խումբ տղա ու աղջիկ,
Պայուսակները ձեռքները առած,
Ժպիտ է կաթում նրանց շուրթերից,
Ու խինդ է ցայտում աչքերից նրանց:

Իսկ ո՞վ է այդ ծույլ, դանդաղկոտ տղան,
Որ այդպես մենակ ու մտամոլոր,
Երամը կորցրած թռչունի նման
Քայլում է տխուր, լուռ ու գլխիկոր:

Ո՞վ պիտի լինի, մի երկտարեցի,
Նստելու է նա նույն դասարանում,
Ինչպե՞ս ներս մտնի շեմքից դպրոցի,
Ասես բոլորը իրեն են նայում:

Բաժանվել է նա հին ընկերներից,
Նորերին էլ դեռ լավ չի ճանաչում,
Նրանք մի տարով փոքր են իրենից,
Ինքը նրանցից ո՞նց է ամաչում...

Մի՛ հուսահատվիր, տղա՛ս, դու այդքան,
Լավ-լավ ընկերներ էլի՛ կունենաս,
Միայն աշխատի՛ր, որ մյուս անգամ
Քո ընկերներից էլ ետ չմնաս:

# ԳՐԱՊԱՀԱՐԱՆԻ ԲԱՆԱԼԻՆ

*ԿԱՐԼՈՍ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ*



այրս հերթափոխային աշխատանքից հոգնած տուն էր գալիս և իսկույն քնում: Նա չէր կարող նկատել, թե ես ինչպես եմ լուսացնում գիշերները: Միայն տատս էր ցավով ասում.

— Հերիք է, բալա՛, աչքերիդ լույսը կխավարի...

Առավոտյան դպրոց էի գնում ուռած աչքերով և վերջին նստարանին կծկված քնում: «Երկուսներ» ստանալը և ուսուցիչների նախատինքը գնալով արդեն սովորական էին դառնում:

Երբ «երկուսներս» ու բացակայություններս ռեկորդային դարձան՝ դասղեկն ասաց.

— Կարե՛ն, առանց ծնողի դպրոց չգաս:

— Մայրս երկհերթ է աշխատում...

— Թող ձեր տանից որևէ մեկը գա:

Գալիս եմ տուն և գլխիկոր դիմում տատիս.

— Ծնող են կանչել:

— Ո՞րդ ասա:

— Դասղեկն ասաց. «Թող ձեր տանից որևէ մեկը գա»...

Հաջորդ օրը, տատս փորձված դիվանագետի կեցվածքով կանգնում է ուսուցչանոցի կենտրոնում և սկսում հանգիստ զրուցել ուսուցիչների հետ:

— Մայրի՛կ, ճիշտ է, ձեր թոռը ընդունակ տղա է, բայց չափազանց ծույլ է,— ասում է դասղեկը:

— Է՛, աղջի՛կ ջան,— հառաչում է տատս,— այնպիսի հոր տղա է, որ ուզի-չուզի ընդունակ պիտի լինի... Իսկ ծուլությունն էլ, որ ասում ես, էդ արդեն մոր կողմից է գալիս...

Ուսուցչանոցը լցվում է ծիծաղով:

— Դասի ժամանակ անընդհատ քնում է, բա դա ո՞ւմ կողմից է գալիս,— չարախնդում է ֆիզիկայի ուսուցիչը:

— Իմ կարծ խելքով, էդ արդեն գրքերի մեղքն է... Խեղճ երեխան գիշեր ու զօր կարդում է... Ա՛յ, բոլորդ էլ ուսումնական մարդիկ եք, ասե՛ք, ի՞նչ անենք...

Ուսուցիչները լռեցին: Ելքը գտավ ինքը՝ տատս:

Հենց նույն օրը նրա խնդրանքով, պապս մի քանի տասնյակ գիրք լցրեց հսկա պարկի մեջ ու դիմեց ինձ.

— Դե՛, գնացինք, Կարե՛ն:

— Եթե մի բան խնդրեմ, կանե՞ս,— սև շուկա տանող նանապարհին հարցնում եմ պապիս:

— Նայած ինչ ես խնդրում,— ինչ-որ բանից զգուշանալով՝ պատասխանեց նա:

— Թույլ կտա՞ս մեզնից գիրք գնողների հասցեները ծոցատետրիս մեջ գրեմ...

— Ինչի՞դ են պետք:

— Որպեսզի մեր վաճառած գրքերը նորից ետ գնենք:

— Թե որ պիտի ետ գնենք, էլ ինչո՞ւ ենք ծախում:

— Հիմա չէ, պատերազմից հետո:

— Ետ մի՛ ընկնի,— դժգոհում է պապս,— բեռը իմ շալակին է, դու ես ետ մնում:

— Պա՛պ:

— Հը՞:

— Մարդիկ ինչո՞ւ են կռվում:

— Հացի ու հողի համար...

— Չի հերիքո՞ւմ:

— Հերիքում է, բայց մարդիկ ագահ են...

— Պա՛պ, դո՞ւ էլ ես ագահ:

— Գլուխս մի՛ ցավացրու: Երբ հասնենք շուկա, կողքիցս չհեռանաս:

Շուկայում ոչ մի քայլ չհեռացա պապիցս: Նա անփութորեն գրքերը շարեց գետնին ու սկսեց բարձր-բարձր բղավել.

— Եկե՛ք, լավ գիրք տա՛մ, լավ գի՛րք...

Մարդիկ կարծես չէին լսում նրան: Միայն մի ակնոցավոր ծերունի մոտեցավ ու մեղմ հանդիմանեց.

— Քաղաքացի՛, պատկառանք ունեցեք գրքերի նկատմամբ... Այնպես եք բղավում, կարծես ծիրան վաճառելիս լինեք...

— Դե գնա բանի՛դ,— զայրացավ պապս,— թե որ սիրտդ ցավում է, մի քանի հատ ա՛ռ...

— Բարբարոսնե՛ր,— չգիտեմ պապի՞ս, թե՞ շուկայում գտնվող մարդկանց ուղղեց ծերունին ինձ համար անհասկանալի այդ բառը և գլուխն օրորելով հեռացավ:

Մի քանի անգամ մտովի կրկնեցի ակնոցավոր ծերունու ասածը, բայց իմաստը չհասկացա:

— Պա՛պ, ի՞նչ է նշանակում «բարբարոս»...

Պապս խեթ նայեց ինձ և արագ-արագ գրքերը պարկի մեջ լցնելով՝ ասաց.

— «Բարբարոս» նշանակում է ինձ նման հիմարի մեկը, որ կարծում է պատերազմի ժամանակ մարդիկ կարող են գիրք գնել... Դե, գնացի՛նք,— ծանր պարկը շալակելով, հրամայեց նա:

Այդ պահին ես աշխարհի ամենաերջանիկն էի, որի չվաճառված երազները ու ուրախությունը պապի շալակին էին, իսկ ինքը սուլելով հետևում էր նրան:

— Վե՛րջ տուր շվշվոցիդ, գլուխս չունեմ,— դըժգոհեց պապս:

— Իսկ երգել կարելի՞ է:

— Դու տխուր երգ չգիտես…

— Գիտե՛մ,— զվարթ բացականչում եմ ես և ձայնս նմանեցնելով մեր բակի մշտական այցելու կույր աշուղի ձայնին՝ երգում եմ.

**«Սև ծովի ափին, մայրիկ,**
**Փրփուր չի բռնում։**
**Իմ գրած նամակը, մայրիկ,**
**Քեզ չի հասնում»…**

Պապս կանգ առավ, խորը արտաշնչեց և գրքերով լի պարկը վայր դնելով, նստեց վրան.

— Հերիք է երգես, հոգնեցիր, արի նստի՛ր…

Նստում եմ։ Պապս մեղմ շոյում է գլուխս։

— Դե՛, հիմա էլ մի ուրա՛խ բան երգիր։

Մտքով մի քանի անգամ տնտղում եմ իմացածս երգերը։

— Պա՛պ, ուրախ երգ չգիտեմ…

— Է՞,— հառաչեց նա,— վեր կաց գնա՛նք, տանը հազար ու մի գործ կա։

Պապիս հազար ու մի գործերից մեկն էլ եղավ այն, որ մորս ու տատիս խնդրանքով գրապահարանի դռան վրա հսկա փականք դրեց…

— Մինչև դասերդ չկանոնավորես՝ գրքի երես չես տեսնի,— սպառնաց մայրս։

— Մի՛ մտածի, բալա՛,— հուսադրեց տատս,— էդ բոլոր գրքերն էլ քոնն են, կմեծանաս, կկարդաս։

Իսկ ես չափազանց դանդաղ էի մեծանում։ Այդ էր վկայում ննջասենյակի փայտե հենասյունը։ Ամիսներ առաջ նրա վրա մատիտով նշել էի հասակիս բարձրությունը։ Գրեթե ամեն օր վերցնում էի մատիտն ու քանոնը և ստուգում աճս։ Ու երբ այդ օրն էլ ուշադիր չափելուց հետո տեսա, որ տեղաշարժ չկա, հիասթափված մի կողմ շպրտեցի մատիտն ու քանոնը։

Դուրս եկա բակ։ Պապս այնտեղ հոր էր փորում։ Հողը անչափ կարծր էր։ Կարճատև ընդմիջումներից հետո պապս թքում էր ձեռքի ափերի մեջ և վերցնում բրիչը։ Հարվածելու պահին նա խորը արտաշնչում էր և նրա կոկորդից անորոշ ձայներ էին դուրս թռչում։ Դժվար էր ասել, զայրո՞ւյթ էր, հառաչա՞նք, թե՞ անեծք…

— Պա՛պ…

Նա դժվարությամբ ուղղում է գոլորշի արձակող խոնավ մեջքը և պղտոր աչքերը հառում վրաս։

— Պա՛պ…

— Հը՞,— բրիչն ավելի խորն է խրվում կարծր հողի մեջ։

— Քանի՞ մետր ես փորելու։

— Մի մարդաբոյ…

— Եթե փորող մեքենա ունենայիր՝ շա՜տ կփորեիր։

— Ինչների՞ս է պետք։

— Կիջնեինք երկրի կենտրոնը և միասին կնավարկեինք ծովում…

— Գետնի տակ ծո՞վ,— զարմանում է պապս։

— Հա՛, պրոֆեսոր Լիդենբրոկն է հայտնաբերել։

— Լիդենբրոկն ո՞վ է։

— Ժյուլ Վեռնի «Ուղևորություն դեպի երկրի կենտրոն» վեպը չե՞ս կարդացել։

— Չէ՛,— ինչ-որ բանից դժգոհ քրթմնջում է նա։

— Ուզո՞ւմ ես պատմեմ,— ոգևորված առաջարկում եմ ես։

Ի նշան համաձայնության, նա հենվում է ձեռքի բրիչին և հարցական նայում ինձ։

Ինքնամոռացմամբ պատմում եմ վեպի ամբողջ բովանդակությունը։

— Ապրե՛ս,— հիացած բացականչում է պապս և ծոցագրպանից հանելով գրապահարանի բանալին՝ մեկնում է ինձ,— վերցրո՛ւ… Բայց տղամարդու խոսք տուր, օրվա դասերդ մինչև չսովորես, գրապահարանին չես մոտենա։

Խոսք տվի։



*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

# ՀԱՐՑԵՐ, ՈՐ ԿԱՐԵԼԻ Է ՄԱՍՆԱՎՈՐ ԿՈՉԵԼ

*ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

Ռուսաստանում իր հպատակներին առաջին անգամ «դուք»-ով դիմել է Պետրոս Առաջինը: Մարդկանց դիմելու այս նոր ձևը այն ժամանակ շատ արտառոց էր հնչում:

Այն ժամանակից ի վեր, ինչ մարդկանց դիմելու նոր ձևը արմատներ գցեց Ռուսաստանում, «դու»-ն և «դուք»-ը դարձան մարդկանց հասարակական դիրքի որոշիչներ: Այդ տարբերությունները պահպանվում էին հատկապես ամեն տեսակի վարչական և դատական հիմնարկներում: Ցարական Ռուսաստանում ոչ մի պետական պաշտոնյայի մտքով չէր անցնի «դուք»-ով դիմել աղքատ կամ ոչ անվանի այցելուի:

Կան լեզուներ, որ քերականական հատուկ ձևեր և նույնիսկ հատուկ անձնական դերանուններ ունեն հարգանք կամ ընդհակառակը՝ արհամարհանք արտահայտելու: Այսպես, օրինակ, ժամանակակից Հնդկաստանի բենգալի լեզվում սովորական «ես»-ից բացի կա նաև «ես-նվաստս», «ես-չնչինս», «ես-խղճուկս» դերանունը: Բացի հավասարը հավասարին դիմելու «դու»-ից, բենգալի լեզվում կա նաև այլ «դու», որ մեր «դուք»-ի նշանակությունն ունի՝ «դու-հարգարժան», և մի «դու» ևս՝ «դու-արհամարհական, քամահրական»: Այս անձնական դերանունները գոյություն ունեն հատկապես «ստորին» խավի, ծառաների ու աղքատների հետ հաղորդակցվելու համար:

Որոշ լեզուներում քաղաքավարության հատուկ մի ձև է մարդուն դիմել երրորդ դեմքով:

— Պանը հասկանո՞ւմ է լեհերեն:

Նույնը և ֆրանսերենում.

— Մոսյոն մեկնում է Մարսե՞լ:

Վարվելաձևի ամենախճճված հարցերից մեկը կռույցի ժամանակ ուր նայելու հարցն է: Չինական հին ավանդույթի համաձայն, կռույցի ժամանակ մարդը իրենից ավագի աչքերին պետք է նայի երկու անգամ՝ ներս մտնելիս և հրաժեշտի պահին: Հին Կորեայում և Չինաստանում իրենից ավագի հետ խոսելիս անպայման պետք էր հանել ակնոցը: Չանել այդ՝ կնշանակեր լկտի պահել իրեն:

Եվրոպայում, սակայն, բոլորովին հակառակ պատկերացումը կար ավագի հետ խոսելու կարգի մասին: Օրինակ, միջնադարյան Անգլիայում աստիճանով իրենից բարձրի հետ կռուցելիս ընդունված էր նայել ուղիղ դեմքին: Նույն այդ տեսակետին էր նաև «Գովք Հիմարության» գրքի հեղինակ Էրազմ Ռոտերդամցին, որն այդ սատիրական երկից բացի գրել է նաև գիրք վարվելաձևի մասին:

Ինքնին հասկանալի է, իհարկե, որ «աչքերը պլշելը» երբեք վայելուչ պահվածք չի համարվել: Եթե որևէ մեկը գրավում է ձեր ուշադրությունը, դա դեռ բավական չէ, որպեսզի սևեռուն հայացքով նայեք այդ մարդուն, առանց մտածելու, որ նրա համար դա կլինի և՛ վիրավորական, և՛ տհաճ:

Հաճախ շրջապատի կողմից սևեռուն ուշադրության առարկա են դառնում հռչակավոր գրողները, դերասանները:

«...քայլում էի գիշերը Անիչկին կամուրջով,— հիշում է Գորկին,— ինձնից առաջ անցան երկու մարդ, ըստ երևույթին, վարսավիրներ, և նրանցից մեկը երեսիս նայելով՝ վախեցած շշնջաց ընկերոջը.

— Մի տե՛ս, Գորկին:

Ընկերը կանգնեց, ուշադիր կննեց ինձ ոտից գլուխ և հիացմունքով ասաց.

— Ա՛յ քեզ սատանա: Ռետինե կրկնակոշիկներով է ման գալիս»:

Կարելի է պատկերացնել, թե իրեն՝ Գորկու համար որքանով կարող էր հաճելի լինել նման անքաղաքավարությունը:

Երբ Յալթայում հանգստացողները ճանաչում էին լրագիրը ձեռքին նստարանին նստած Չեխովին, կանգ էին առնում և ապշած հայացքով նայում նրան այնպես, ինչպես փղին կամ վագրին կնայեն: Սրտնեղած գրողը ստիպված էր լինում թաքնվել լրագրի ետևում:

Ճապոնական կլասիկ վարվելաձևը, խնայելով օտարերկրացու զգացումները, պատվիրում է թիկունքը նրան արած կանգնել: Բանից անտեղյակ մարդուն այս վարվելակերպը կարող է անվայել թվալ, իսկ ճապոնացիներն այդ սովորությունը բացատրում են անծանոթ մարդուն կնճող հայացքով չվիրավորելու ցանկությամբ:

Դեռևս հին ժամանակներում գտնում էին, որ երբ կռուցակիցներից մեկը նստած է, իսկ մյուսը կանգնած, ապա նստածը պետք է լինի տարեցը և ավելի հարգարժանը: Կողմերի անհավասարությունն ընդգծող այս վարվելաձևից քաղաքական գործիչները քիչ չեն օգտվել:

Հոների առաջնորդ Աթիլլան իր անարգելու կարողությունը ցույց տալու համար, բյուզանդական դեսպաններին ընդունեց և նրանց ողջույնը լսեց նստած՝ առանց աթոռից վեր կենալու: Իսկ բյուզանդացիների և սկյութների բանակցությունների ժամանակ, քոչվորները պայման դրին, որ իրենք պետք է խոսեն ձիերին նստած: Այդ ժամանակ, չկամենալով նըվաստանալ, բյուզանդական դիվանագետները ևս ձիեր նստե-

ցին: Այդպես էլ ընթացան բանակցությունները՝ հավասար պայմաններում. նստածները խոսում էին նստածների հետ:

Ինչպես գիտենք դասագրքերից՝ Հուլիոս Կեսարն սպանվել է: Բայց սպանության և դավադրության մտադրությունը հասունացել էր Կեսարի սպանությունից շատ առաջ: Դավադրության մղող դեպքերից մեկի մասին պատմում է Պլուտարքոսը: «Մի անգամ սենատում նրան արտակարգ մեծարանքներ են մատուցում: Կեսարը նստած էր, երբ նրան մոտեցան կոնսուլներն ու պրետորները սենատի լրիվ կազմի հետ միասին: Նա վեր չկացավ տեղից և դիմեց նրանց իբրև ինչ-որ պատահական մարդկանց...»

Ոչ միայն սենատի անդամները, այլև բոլոր ներկա գտնվողները, խորապես վիրավորվեցին Կեսարի վարմունքից: «Ասում են,— շարունակում է Պլուտարքոսը,— թե նա սկզբում կամեցել է վեր կենալ տեղից և կանգնել սենատի առաջ, որ և բնական էր, բայց նրան պահել է իր բարեկամներից, ավելի ճիշտ՝ շողոքորթներից մեկը, Կորնելիուս Բալբոսը, որն ասել է.

— Չէ՞ որ դու Կեսար ես: Միթե չպիտի պահանջես, որ քեզ մեծարեն իբրև նրանցից բարձր կանգնածի»:

Շուտով Կեսարը հասկացավ, թե ինչ սխալ է թույլ տվել և նույնիսկ փորձեց ուղղել: Բայց արդեն ուշ էր:

Երբ Նապոլեոնի աստղը դեռ նոր էր ծագում, նա բանակի հրամանատար է կարգվում Իտալիայում: Համհարզների ուղեկցությամբ Նապոլեոնը արագ քայլերով մտնում է շտաբ, ուր երիտասարդ հրամանատարին սպասում էին գեներալները: Խոժոռադեմ ու ճերմակահեր, իրենց կյանքի կեսը կռիվներում ու արշավանքներում անցկացրած գեներալները նստել էին մեծ սեղանի շուրջը, որի վրա փռված էր ռազմական գործողությունների քարտեզը: Երբ Նապոլեոնը ներս մտավ սենյակ և մոտեցավ սեղանին, նրանցից ոչ մեկը չկամեցավ վեր կենալ քսանհինգամյա հրամանատարի առաջ: Այդ ժամանակ կայրացած Նապոլեոնը հանեց սուրը և ամբողջ ուժով շրխկացրեց սեղանին: Գեներալները վեր թռան տեղերից: Դրանից հետո միայն Նապոլեոնը խոսեց:

Անցան տարիներ: Եվ նույն այդ մարդը, ճիշտ է, արդեն ոչ իբրև բանակի հրամանատար, այլ կայսր Նապոլեոն, Էրֆուրտ քաղաքում ընդունում է գերմանացի մեծ բանաստեղծ Գյոթեին: Դեռևս պարտության դառնություն չճաշակած ֆրանսիական կայսրը վայելում է հաղթողի իր դերը: Պրուսիան ու Գերմանիան ջախջախված, ընկած են նրա ոտքերի տակ: Եվ այժմ, կամենալով էլ ավելի նվաստացնել պարտվածներին, նա Գյոթեին չի հրավիրում նույնիսկ նստել: Ծերունազարդ բանաստեղծը ստիպված էր կայսեր հետ խոսել կանգնած:

Բայց ահա մեկ և կես հարյուրամյակ անց, մենք ձեզ հետ միասին իմանում ենք այդ պատմությունը: Արդյոք դա ավելացնո՞ւմ է մեր հարգանքը փառաբանված զորավարի հանդեպ: Ո՛չ, ընդհակառակը:

Մենք գիտենք մեծ մարդկայնության և մարդկանց հարգելու այն հատկության մասին, որ հատուկ էր Լենինին: Տարբեր մարդիկ, որ հանդիպել են Լենինին, նկատել են, թվում է թե չնչին, բայց այսպիսի բնորոշ մանրամասն. «Ներս մտավ Վլադիմիր Իլյիչը և ձեռքի շարժումով հրավիրեց ինձ նստել»: «Լենինը վեր կացավ սեղանի մոտից, բարևեց և ցույց տվեց, թե որտեղ նստենք»:

«Վլադիմիր Իլյիչը ինձ հրավիրեց նստել և սկսեց հարցուփորձ անել գերության մեջ եղած տարիների մասին» «...սեղմեց ամեն մեկիս ձեռքը և նստեցրեց բազկաթոռներին»:

Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

*Աշտարակի շրջանը Հայաստան աշխարհի նախկին Արագածոտն գավառի մի մասն էր կազմում: Այս գեղեցիկ բնաշխարհը հարուստ է պատմական հուշարձաններով: Արագածոտնի հարավային լանջերը նախամարդու բնակավայրեր են եղել: Հին բնակավայրի հետքեր կան Աշտարակ քաղաքից Թալին տանող խճուղու մոտ: Արուճ գյուղի տարածքում կան ուրարտական ամրոցի մնացորդներ և սեպագիր արձանագրություն: Պատմական հուշարձանների առատությամբ Աշտարակի շրջանը մեր հանրապետությունում գրավում է առաջին տեղերից մեկը: Ներկայումս այնտեղ կան ավելի քան 300 պատմական հուշարձան, որոնք դարերի թոհուբոհի միջով անցել և մեզ են հասել:*

*Շրջանի դպրոցականները գիտակցելով, որ այդ կոթողները ոչ միայն այսօր, այլև դարեր հետո էլ պետք է կարմանք ու հիացք պատճառեն մարդկանց իրենց անկրկնելիությամբ, ինքնատիպությամբ ու գեղեցկությամբ, պատրաստակամորեն ընդունեցին պատմական հուշարձանների պահպանման հայկական ընկերության, շինարարության գործերի պետական կոմիտեի, ճարտարապետական հուշարձանների*




* * *

Ձևայած արտաքինով իրարից ոչնչով չեն տարբերվում, այնուհանդերձ Աֆրիկայում դժվար է գտնել բոլորովին իրար նման երկու ընձուղտ: Ինչպես վկայում են Նայրոբիի արգելանոցի (Քենիա) գիտնականները, ընձուղտների վզերի նախշերը անկրկնելի են, ինչպես մարդու մատնահետքերը:



* * *




Տարբեր երկրներում քաղաքներ են անվանում տարբեր մեծության բնակավայրեր: Օրինակ, Սկանդինավիայում քաղաք է համարվում 200 բնակիչ ունեցող բնակավայրը, ԱՄՆ-ում՝ 2500, Հնդկաստանում՝ 5000:

ՄԱԿ-ի փորձագետ-ժողովրդագիրները պայմանավորվել են քաղաք անվանել 20.000-ից ավելի բնակիչ ունեցող բնակավայրը:

## «ԹԱՆԱՔԻ» ԼԻՃԸ

Ախուրյանի շրջանի Մարմաշեն գյուղի միջնակարգ դպրոցի աշակերտուհի Կարապետյան Թամարան մեր խմբագրության միջոցով դիմել է աշխարհագետ Կամսար Ավետիսյանին, խնդրելով պատմել Թանաքի լճի մասին:

Ահա և ընկ. Կամսար Ավետիսյանը կատարում է նրա խնդրանքը, համոզված, որ այդ կարող է հետաքրքրել ամսագրի ընթերցողներից շատերին:

Շատ ուրախալի է Կարապետյան Թամարայի հետաքրքրասիրությունը, և այն, որ նա գիտի քիչ հայտնի լճի գոյության մասին:

«Թանաքի» լիճը գտնվում է Ալժիր պետության Սիդի-Բել-Աբես քաղաքի մոտ: Այս քաղաքը պետք է փնտրել Ալժիրի հյուսիսում՝ Օրանի նահանգում:

Լիճը «Թանաքի» է կոչվում, որովհետև նրա ջուրը ունի կապույտ թանաքի գույն: Իսկ ինչո՞ւ թանաքի. նրա մեջ թափվող գետակը հոսում է իր մեջ կապտագույն նյութ պարունակող տորֆավայրով: Կապտագույն այդ նյութը լուծվելով գետակի մեջ, նրան տալիս է թանաքի գույն: Գետակն էլ իր հերթին թանաքագույն է դարձնում նշանավոր «Թանաքի» լիճը:

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*
աշխարհագետ

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԿԱՏՈՒ

*Օսակայի համաշխարհային ցուցահանդեսում (Ճապոնիա) ներկայացված է մի արտասովոր էլեկտրոնային «կատու»: Նա կարողանում է մլավել րոպեում 7—14 անգամ և պտտեցնել կանաչ լույս արձակող աչքերը: «Կատուն» նախատեսված է մկների և առնետների դեմ պայքարելու համար:*

*«Կատվի» գյուտարար ճապոնացին ասում է, որ առաջին իսկ փորձի ժամանակ վախից սատկել են ինն մուկ:*



պահպանության ու վերականգնման վարչության և «Պիոներ» ամսագրի խմբագրության կողմից հայտարարված մրցույթի պայմանները և կոնկրետ պարտավորություններ ստանձնեցին:

Քաղաքի Գ. Ղափանցյանի անվան և Ագարակի միջնակարգ դպրոցների պիոներ-դպրոցականները մեծ աշխատանք են կատարել:

Պատմական հուշարձանների պահպանման հայկական ընկերության Գ. Ղափանցյանի անվան դպրոցի սկզբնական կազմակերպությունը մի քանի անգամ շաբաթօրյակ է կազմակերպել և բարեկարգել Մուղնի գյուղի հուշարձանի շրջակայքը: Դպրոցականները պատերը մաքրել են գրոտումներից, տնկել և խնամում են ավելի քան 50 պտղատու և դեկորատիվ ծառեր, առվույտ են ցանել, խմելու ջուր են անցկացրել բակում: Դպրոցականները ջանասիրությամբ մասնակցել են հուշարձանի վերանորոգման աշխատանքներին:

Առատորեն բուսած խոտը, արմատներ գցելով քարերի արանքում, խախտել էր տանիքի ծածկը: Կենսաթոշակառուներ Մովսես Գյոլշանյանի և Գրիգոր Հայրապետյանի անմիջական ղեկավարությամբ պատրաստվեց երկաթյա սանդուղք, բարձրացան



•••

Հնդկաստանի նահանգներից մեկում կա այսպիսի մի օրենք. եթե աշակերտը խոտի հոկեյի պատճառով դասի չի գնում, նրա փոխարեն դասի պետք է գնա ծնողներից որևէ մեկը:

•••

Տարվա միայն մի ամիս՝ փետրվարին, խաղաղ և Ատլանտյան օվկիանոսի ջրերը մի մակարդակի վրա են գտնվում: Մյուս ամիսներին՝ Խաղաղ օվկիանոսի մակարդակը բարձր է լինում:

•••

*«Մահվան ծաղիկ». այսպես են անվանում Ճավա կղզու (Ինդոնեզիա) բնակիչները պրիմուլա իմերալիս ծաղկին: Ծաղիկն աճում է աշխարհում միայն մի տեղ՝ այդ կղզու հրաբխի վրա, որի բարձրությունը մոտ 10.000 ֆուտ է: Երբ բացվում է ծաղիկը, նշանակում է՝ մոտ է հրաբխի ժայթքումը:*



## ԳՈՐՇ ԿԵՏԻ ԿԱԹԸ

**Կովի լավ կաթի յուղայնությունը չի անցնում 3—4 տոկոսից: Ավելի յուղալի կաթը անվանում են սերուցք, որը ստանում են կաթի գործարանում: Բայց որոշ վայրի կենդանիներ տալիս են պատրաստի սերուցք: Օրինակ, անտիլոպ գնուի կաթը ունի 3,7-ից մինչև 10,1 տոկոս յուղայնություն, փղի կաթը՝ 9,3 տոկոս: Իսկական սերուցք ունի դելֆինը՝ 18—30 տոկոս յուղայնություն: Այնուհանդերձ, ռեկորդը պատկանում է կալիֆոռնիական կետին, որի կաթի յուղայնությունը 53 տոկոս է:**

## ՕՃԵՐԸ... ԿԵՐԱԿՈՒՐ

Ճապոնացիների սիրած կերակրատեսակների մեջ մեծ տեղ ունեն... օձերը: Երկրի երեք հարյուր ռեստորանների ճաշացանկում միշտ լինում են օձերից պատրաստված կերակուրներ. եփած, տապակած և հում օձեր: Վերջինիս մեջ առանձնապես գնահատվում է արյունը, որը, ինչպես գիտնականներն են հաստատում, հարուստ է վիտամիններով և «երկարակեցության ըմպելիք» է համարվում: Տոկիոյում կան երեք ռեստորաններ, որոնց ճաշերը կապված են միայն օձերից: Ամեն տարի Ճապոնիայում ուտում են 200.000 թունավոր օձ և մոտ մեկ միլիոն ոչ թունավոր օձ:



## ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲՈՒՅՍԵՐԸ



Ամերիկացի բնագետ Դորոթի Ռետալեկը բույսերի վրա կատարած երկարամյա ու բազմաթիվ փորձերից հետո եկավ այն եզրակացության, որ ակուստիկ տատանումները իրոք ազդում են բույսերի վրա:

Հետաքրքիր է, որ տարբեր մեղեդիներ տարբեր ազդեցություն են գործում: Բախի երգեհոնային երաժշտությունը նպաստում է բույսի «տեսքի» պահպանմանը: Որոշ դեպքերում, թվում է, թե դասական կամ խաղաղ երաժշտությունը խթանում է բույսի աճին, իսկ չափից դուրս աղմկոտ երաժշտությունը, օրինակ՝ ռոկն-ռոլը, ընդհակառակը, սպանիչ ազդեցություն է գործում:

---

*հուշարձանի տանիքը, մաքրեցին արմատներից և կառույցը փրկեցին անձրևաջրի ներծծումից: Զանգակատանը և գմբեթում անց է կացվել էլեկտրական լուսավորություն: Վերականգնվել է հրապարակի սալահատակը: Աշակերտները հետևում են, որպեսզի ոչ ոք պատերին չգրոտի, անվնաս մնան խաչքարերը, քանդակներն ու վիմագիր արձանագրությունները:*

*Շեֆական օրինակելի աշխատանք են կատարում Ագարակի միջնակարգ դպրոցի աշակերտները: Նրանք գյուղի հուշարձանը խնամքով պահպանելուց, շրջապատը մաքուր պահելուց և բարեկարգելուց բացի, դպրոցի դիրեկտոր ընկ. Գ. Հովսեփյանի ղեկավարությամբ ուսումնասիրել են շրջանի ճարտարապետական հուշարձանները (Արուճ, Հովհաննավանք, Սաղմոսավանք, Կոշ, Ամբերդ, Մարինե, Մուղնի, Կարմրավոր, Ծիրանավոր, Եղվարդ, Օշական), լուսանկարել և մի ուշագրավ ցուցահանդես են կազմակերպել դպրոցում:*

*Աշակերտների գեղագիտական ճաշակը կարգացնելու, պատմաճարտարապետական կոթողները լավ ճանաչելու նպատակով, աշակերտների համար ցուցադրվել են «Յոթ երգ Հայաստանի մասին», «Թանգարան բաց երկնքի տակ», «Գեղարդ» և այլ կինոնկարներ:*

*Ի. ԷԼԼԱՐՅԱՆ*

# ՃԱՆԱՉԻ՛Ր ԵՎ ՀԱՎԱՔԻ՛Ր

## ՄԱՏՆՈՑՈՒԿ



Պատկանում է խլածաղկազգիների ընտանիքին: Բազմամյա խոտաբույս է՝ 40—70 սմ. բարձրությամբ:

Տերևները հերթադիր են, ձգված՝ նշտարաձև 15—20 սմ. երկարությամբ: Մերձարմատային տերևները ավելի խոշոր են՝ լավ արտահայտված կուզահեռ ջղերով: Ցողունը վերջանում է ողկուզանման ծաղկափթությամբ, որի երկարությունը հասնում է 15—30 սմ: Ծաղկապսակը նման է մատնոցի, որտեղից էլ բույսը ստացել է մատնոցուկ անունը:

Ծաղկում է ամռանը՝ հունիս-օգոստոս ամիսներին: Աճում է սաղարթավոր անտառների բացատներում, թփուտներում ու մարգագետիններում:

Դեղագործության մեջ օգտագործում են բույսի տերևները, որոնց սովորաբար հավաքում են բույսի կյանքի երկրորդ տարում և խնամքով չորացնում:

Մատնոցուկի տերևների ազդող հիմնական նյութը սրտային գլյուկոզիդներն են, որոնց կազմը շատ բարդ է: Այս բույսը բժշկության մեջ ներդրվել է շուրջ 200 տարի առաջ և ներկայումս էլ լայն կիրառություն ունի գրեթե բոլոր երկրների բժշկության մեջ: Նրա պատրաստուկները կարգավորում են սրտի և անոթների գործունեությունը՝ դրանց անբավարարությունների դեպքում: Օգտագործվում է նաև բազեդովյան հիվանդության դեպքում:

## ՍՊԱՆԴ

Բազմամյա խոտաբույս է՝ կուզատերևազգիների ընտանիքից: Ծաղիկները դեղին են: Պտուղը տափակած տուփիկ է, պարունակում է մանր, մուգ շագանակագույն սերմեր:

Ծաղկում է մայիս-հունիս ամիսներին: Բույսը դառը համ ունի և արձակում է սուր ու անդուր հոտ:

Սպանդի սերմերը պարունակում են մի քանի ալկալոիդներ,



## ԽԱՉԲԱՌ «ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ»

*1. Հովհ. Թումանյանի «Անուշ» պոեմի հերոս: 2. Անտիկ շրջանի հույն բանաստեղծուհի: 3. Ղազախ գրող Մուխտար Աուեզովի վեպը, որն արժանացել է լենինյան մրցանակի: 4. Զոլայի վեպը: 5. Չարենցի պոեմը: 6. Անգլիացի մանկագիր, «Վինի-Թուխը և բոլո՛ր, բոլորը» գրքի հեղինակը: 7. Չին բանաստեղծ: 8. 19-րդ դարի բուլղար բանաստեղծ, Թուրքական լծի դեմ ազգային-ազատագրական շարժման ղեկավարներից: 9. Շոտլանդացի վիպասան: 10. «Կայծեր» վեպի հերոսներից: 11. Չեխովի պիեսը: 12. Նար-Դոսի վեպը: 13. Ալ. Դյումայի «Երեք հրացանակիրներ» վեպի հերոս: 14. Ֆրանսիացի վիպասանուհի: 15. Սովետահայ բանաստեղծ: 16. Ֆրանսահայ գրող:*

ԳՐ. ՄԱԿՈՒՆՑ



# ԴԵՂԱԲՈՒՅՍԵՐԸ

որոնցից ամենակարևորը հարմինն է: Ժողովրդական բժշկության մեջ սպանդի կանաչ կանգվածը լայնորեն օգտագործվում է յուղանքի ձևով և հանդիսանում է լավ բուժամիջոց ռևմատիզմի և մաշկային հիվանդությունների համար:

## ԽՈՒԼ ԵՂԻՆՋ



Պատկանում է շրթնածաղիկների ընտանիքին: Բազմամյա խոտաբույս է՝ սողացող, հորիզոնական կոճղարմատով: Տերևները ունեն երկար տերևակոթեր և հիշեցնում են խայթող եղինջին: Սակայն խայթող չեն, ուստի և անվանում են խուլ եղինջ:

Խուլ եղինջը սկսում է ծաղկել մայիսին, մինչև ուշ աշուն: Աճում է հիմնականում ստվերոտ վայրերում, այգիներում՝ ցանկապատերի մոտ, երբեմն անտառներում, թփուտներում և այլն: Նրան կարելի է հանդիպել նաև բարձր լեռներում՝ Ալպյան գոտու ժայռերի քարաբեկորների արանքներում:

Բուժիչ հատկություններով օժտված են խուլ եղինջի ծաղկապսակները:

Ծաղկապսակներից ստացված դեղափոշին կամ բուսաջուրը օգտագործվում է, որպես արյունահոսությունը դադարեցնող միջոց: Օգտագործվում է նաև շնչառական ուղիների կատարի, դողէրոցքի, փայծաղի հիվանդությունների դեպքում:

Վ. ՈՍԿԱՆՅԱՆ


Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ

№ 9 սեպտեմբեր 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Адрес редакции: Ереван-200, ул. Кармир банаки, № 15, почт. инд. 375200.

Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։

Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։

ՎՖ 05368: Պատվեր 803: Տպաքանակ՝ 68700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 20/IX 1971 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

